Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1955

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։



# ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԻՍՈՒՆԱՄՅԱԿԸ

1955 թվականին մեր Հայրենիքի աշխատավորները նշում են 1905—1907 թ. թ. ռուսական առաջին ռևոլյուցիայի հիսունամյակը։ Այս ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական նշանակությունը նախ և առաջ այն է, որ ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, նա հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր փորձը։

20-րդ դարի սկզբին Ռուսաստանը, որը դարձել էր համաշխարհային իմպերիալիզմի հակասությունների հանգուցային կետը, ավելի, քան աշխարհի որևէ այլ երկիր, հղի էր ժողովրդական ռևոլյուցիայով։ Հենց այդ պատճառով էլ 20-րդ դարի սկզբին համաշխարհային պրոլետարական շարժման կենտրոնը տեղափոխվեց Ռուսաստան։

Բարձրացող իսկական ժողովրդական ռևոլյուցիայի գլուխ էր կանգնած աշխարհում ամենառևոլյուցիոն՝ ռուսական պրոլետարիատը, որն ուներ այնպիսի մարտական դաշ-





նակից, ինչպիսին էր Ռուսաստանի ռևոլյուցիոն գյուղացիությունը։ Մեր երկրի բանվորների և գյուղացիների պայքարը կալվածատիրական-ինքնակալական ճնշման և կապիտալիստական սարկացման դեմ, ղեկավարում էր մեծ Լենինի կողմից ստեղծված՝ բանվոր դասակարգի ռևոլյուցիոն-մարքսիստական պարտիան։



Ցարական Ռուսաստանում ժողովրդական ռևոլյուցիայի համար կային բավականին պատճառներ։ Հայտնի է, որ կապիտալիստական ճնշմանն այստեղ ավելանում էր նաև ցարիզմի ճնշումը՝ միջնադարի մնացուկներով, այսինքն ֆեոդալական-ճորտատիրական հարաբերությունների մնացուկներով, որոնցից խիստ տուժում էին և բանվոր դասակարգը և գյուղացիությունը։

Այն ժամանակ բանվորները կապիտալիստական ձեռնարկություններում աշխատում էին լուսաբացից մինչև ուշ գիշեր։ Ծանր, հյուծիչ, երկարատև աշխատանքային օրվա համար նրանք ստանում էին շատ ցածր աշխատավարձ։ Կապիտալիստներն արտադրության մեջ լայնորեն օգտագործում էին կանանց և երեխաների աշխա-



տանքը, ստիպում էին նրանց աշխատել տղամարդկանց հետ համահավասար, բայց վճարում էին շատ քիչ։ Առանց այդ էլ խեղճուկ վարձատրությունը հաճախակի էր ամբողջությամբ հասնում բանվորներին, որովհետև նրանց ստիպում էին եռապատիկ թանկ գներով մթերքները գնել տերերի կրպակներում և ամեն քայլափոխում նրանցից քամում էին թալանչիական տուգանքներ։

Ամեն ինչի համար տուգանք,— իր հուշերի մեջ պատմել է հնագույն ռուս բանվոր՝ ռևոլյուցիոներ Պյոտր Մոիսեենկոն։— Դիրեկտորական պատուհանների մոտով գլխարկով անցնես՝ տուգանք։ Կազարմայում բարձրաձայն խոսես— տուգանք։ Հարմոնով փողոց դուրս գաս— տուգանք։ Կինդ զույգ է բերել— տուգանք։ Են է մնում, որ մարդ պառկի ու մեռնի։

Անտանելի ծանր էր բանվորների բնակարանային վիճակը, նրանք ստիպված էին ապրել պատսպարվել նեղ խուցերում, բանվորական կազարմաներում, գետնափոր տներում։ Պատահական չէ, որ Դոնբասում բանվորական ավանների ծայրամասերը կոչել են շնաբներ։

Տևական քայքայիչ աշխատանքը կապիտալիստների համար, խղճուկ սնունդը,

բժշկական օգնության բացակայությունը, հասցնում էին աշխատունակության վաղաժամ կորստի։ Այդ ժամանակ ֆաբրիկաների և գործարանների տերերն անխղճաբար փողոց էին նետում բանվորներին, աղքատության և սովամահության մատնելով նրանց։

Ռուսաստանի բանվոր դասակարգը տառապում էր ոչ միայն կապիտալիստական ստրկությունից, այլ նաև ցարական ինքնակալության կողմից հարուցվող բռնությունից ու կամայականությունից։

Ցարի-ինքնակալի իշխանությունը ոչ մի բանով և ոչ մեկի կողմից չէր սահմանափակվում, նա միանձնյա կերպով հրատարակում էր օրենքներ և նշանակում չինովնիկներին։

Ցարական իշխանությունները բանվորներին և գյուղացիներին արգելում էին ստեղծել իրենց կազմակերպությունները, ժողովներ անցկացնել։ Գործադուլավոր բանվորներին ծեծում և գնդակահարում էին ոստիկանները, ժանդարմները, ցարական զորքերը։ Մինչև 1903 թվականը գոյություն ունեին մարմնական պատիժներ ամենափոքր իսկ հանցանքի համար, օրինակ՝ հարկը ժամանակին չվճարելու դեպքում գյուղացիները ենթարկվում էին ճիպոտահարության։



Ցարը հանդիսանում էր ամենախոշոր կալվածատերը Ռուսաստանում։ Ցարական ընտանիքն ուներ 8 միլիոն դեսյատին հող։ Իր գլխավոր հենարանը ցարը տեսնում էր ազնվական-կալվածատերերի մեջ և ամեն ինչում պաշտպանում էր նրանց։ 1861 թվականի ճորտատիրական իրավունքի վերացումից հետո, գյուղացիները շնչահեղձ էին լինում սակավահողությունից, ցարական գանձարանին տրվող հսկայական հարկերից և կալվածատերերին փրկագին վճարելուց։

Բնորոշելով գյուղի աշխատավոր մասսաների դրությունը ճորտատիրական իրավունքի վերացումից հետո քառասնամյակի ընթացքում. Վ. Ի. Լենինը գրում էր. «Գյուղացին հասցված էր կյանքի մուրացիկի մակարդակին։ Նա իր անասունների հետ էր ապրում, ցնցոտի հագնում, թելուկով կերակրվում... Գյուղացիները խրոնիկական սով էին ապրում և տասնյակ հազարներով մեռնում սովից ու ավելի ու ավելի հաճախ կրկնվող անբերրիությունների ժամանակ ծագող համաճարակներից»։

Ավելի ծանր էր ոչ ռուս ազգություններին պատկանող բանվորների ու գյուղացիների տնտեսական և քաղաքական դրությունը։ Նրանք ստիպված էին կրել կրկնակի ճնշում՝

սեփական և ռուս կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումը։

Ռուսաստանի աշխատավորների թշվառությունները է՛լ ավելի մեծացրեց 1900—1903 թվականների տնտեսական կրիզիսը, որի ժամանակ փակվեցին մինչև 3 հազար ձեռնարկություններ և փողոց շպրտվեցին 100 հազար բանվորներ։ Աշխատավորների դրությունն է՛լ ավելի վատթարացրեց ռուս-յապոնական պատերազմը։ Ցարիզմի պարտությունն այս անարդարացի պատերազմում առաջ էր բերում ժողովրդական մասսաների ատելությունը ցարական ինքնակալության դեմ և ժողովրդին հանում համբերությունից։

Ռևոլյուցիոն փոթորիկի սկզբնապատճառ ծառայեցին 1905 թվականի հունվարի 9-ի (22) Պետերբուրգյան դեպքերը։

Ի պատասխան աշխատանքից չորս բանվորների պրովոկացիոն ազատման, 1905 թվականի հունվարի 3-ին, Պուտիլովյան գործարանում բռնկվեց հզոր գործադուլ։ Այն տարածվեց նաև այլ ձեռնարկություններում։ Հունվարի 7-ին ամբողջ Պետերբուրգը գործադուլ էր անում։ Բանվորներին ռևոլյուցիոն պայքարից հետ պահելու նպատակով պրովոկատոր տերտեր Գապոնը կատարելով ցարական պահնորդական բաժանմունքի առա-



ջադրանքները, նրանց առաջարկեց կազմել պետիցիա և ներկայացնել ցարին։ Բոլշևիկները մերկացնում էին այս արարքի պրովոկացիոն իմաստը։ Բայց բանվորները, որոնք դեռևս հավատում էին ցարին, գնացին Գապոնի հետևից։

Հունվարի 9-ին (22) կիրակի օրը 140 հազարից ավելի բանվորներ գնացին դեպի Ձմեռային պալատ։

«Մենք աղքատացել ենք, մեզ ճնշում, ծանրաբեռնում են ուժից վեր աշխատանքով, մեզ ծաղր ու ծանակի են ենթարկում, մեզ մարդ չեն համարում...,— գրում էին Պետերբուրգի բանվորները ցարին ուղղված իրենց պետիցիայի (խնդրագրի) մեջ։— Մենք դարձյալ համբերում էինք, բայց մեզ ավելի ու ավելի են մղում դեպի աղքատություն, իրավազրկության ու տգիտության ճահիճը, մեզ խեղդում են դեսպոտիզմն ու կամայականությունը...

Համբերության վերջը հասել է։ Մեզ համար հասել է այն սարսափելի մոմենտը, երբ ավելի լավ է մեռնել, քան շարունակել անտանելի տանջանքները»։

Նիկոլայ 2-րդ ցարը բանվորներին դիմավորեց կապարե կարկուտով, որի համար էլ ստացավ «Արյունոտ Նիկոլայ» մականունը։

Հունվարի 9-ի (22) օրը գնդակահարվեց բանվորների հավատը դեպի ցարը։

Արյունալի դասից հետո, Պետերբուրգի պրոլետարները հասկացան, որ իրենց իրավունքները կարող են ձեռք բերել միայն վրճռական պայքարով և ոչ թե խնդրանքով։ Արդեն հունվարի 9-ի երեկոյան դեմ նրանք սկսեցին կառուցել բարիկադներ, միաժամանակ ավելացնելով. «Ցարը մեզ տուր տվեց, էհ, մենք էլ նրան տուր կտանք»։

Վ. Ի. Լենինը՝ ռուսական պրոլետարիատի մարքսիստական պարտիայի կազմակերպիչն ու առաջնորդը, պետերբուրգյան ջարդից 3 օր անց գրած իր «Ռևոլյուցիայի սկիզբը Ռուսաստանում» հոդվածի մեջ, հայրենասիրական հպարտությամբ նշել է. «Մեծագույն պատմական իրադարձություններ են տեղի ունենում Ռուսաստանում։ Պրոլետարիատն ապստամբել է ցարիզմի դեմ»։



Ցարական ինքնակալության չարագործության լուրն արագորեն տարածվեց ամբողջ երկրով մեկ։ Վրդովմունքն ու զայրույթը տիրեցին ամբողջ բանվոր դասակարգին, ամբողջ ժողովրդին։ Չկար մի քաղաք Ռուսաստանում, որտեղ բանվորները գործադուլ չանեին ցարի չարագործ հանցանքի դեմ և քա-



ղաքական պահանջներ չառաջադրեին։ Հունվար ամսին գործադուլավորների քանակը հասավ վիթխարի թվի՝ 440 հազարի։ Սա նշանակում էր, որ գործադուլներին մասնակցել էր ավելի շատ մարդ, քան անցած 10 տարիների ընթացքում։

Բանվորների ռևոլյուցիոն ելույթների ազդեցության տակ աճում էին գյուղացիական ռևոլյուցիոն շարժումները՝ Ռուսաստանի կենտրոնական նահանգներում՝ Պովոլժյեյում, Անդրկովկասում, Վրաստանում և մի շարք այլ վայրերում գյուղացիները հսկա ամբոխներով գնում էին կալվածատերերի դեմ, ջարդուփշուր անում նրանց կալվածքներն ու գրավում նրանց ունեցվածքը։

Բանվորների և գյուղացիության ռևոլյուցիոն պայքարն իր ազդեցությունը գործեց բանակի և նավատորմի վրա։ 1905 թվականի հունիսին «Պոտյոմկին» հայտնի զրահանավի վրա բռնկվեց սևծովյան նավաստիների ապստամբությունը։ Այդ ապստամբության պատմական նշանակությունն այն է, որ նա հանդիսացավ առաջին մասսայական ռևոլյուցիոն ելույթը բանակում և նավատորմում, ցարական զորքերի մի խոշոր զորամասի առաջին անցումը ռևոլյուցիոն ժողովրդի կողմը։ 1905 թվականի աշնան կող-

մերը ռևոլյուցիոն շարժումն ընդգրկեց ամբողջ երկիրը։ Ռևոլյուցիոն պայքարի ծավալման գործում հսկայական նշանակություն ունեին լենինյան մարտական, բոլշևիկյան լոզունգները՝ մասսայական-քաղաքական գործադուլների մասին, ռևոլյուցիոն ճանապարհով 8-ժամյա բանվորական օրվա իրականացման մասին, գյուղում բոլոր դեմոկրատական բարեփոխումներն անցկացնելու՝ ընդհուպ մինչև կալվածատիրական հողերի բռնագրավման համար ռևոլյուցիոն գյուղացիական կոմիտեներ կազմակերպելու մասին, բանվորներին զինելու մասին։

Այդ լոզունգները, որոնք առաջ են քաշված պարտիայի 3-րդ համագումարի որոշումներում և բազմակողմանիորեն հիմնավորված են Վ. Ի. Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» գրքում, աշխատավոր մասսաներին մոտեցնում էին զինված ապստամբությանը, արձակում էին նրանց ռևոլյուցիոն նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը։

1905 թվականի հոկտեմբերին Ռուսաստանի բանվոր դասակարգն անցկացրեց պատմության մեջ չտեսնված Համառուսաստանյան քաղաքական գործադուլ։ Այդ գոր-



ծադուլի ընթացքում ցարիզմի դեմ մղված պայքարի կրակների մեջ մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործությամբ դարբնվեց մի նոր հզորք զենք՝ բանվորների դեպուտատների Սովետները։ Այդ առաջին Սովետները հանդիսացան 1917 թվականի բանվոր դասակարգի կողմից՝ բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ ստեղծված Սովետական իշխանության նախատիպը, և այժմ աշխարհում ամենակենսունակ ու ամուր կարգի՝ մեր սովետական պետական կարգի սաղմը։

Կենսագործելով լենինյան ցուցումները և պարտիայի 3-րդ համագումարի որոշումները, Մոսկվայի բոլշևիկներն ու նրանց կողմից ղեկավարվող Մոսկվայի բանվորների դեպուտատների Սովետը, 1905 թվականի դեկտեմբերին Մոսկվայի պրոլետարներին զինված ապստամբության հանեցին ցարիզմի դեմ։ Դեկտեմբերյան ապստամբությունը հանդիսացավ առաջին ռուսական ռևոլյուցիայի բարձրագույն կետը։

***

Չնայած այն բանին, որ առաջին ռուսական ռևոլյուցիան վերջացավ պարտությամբ, բայց նա հսկայական պատմական դեր խաղաց Ռուսաստանի աշխատավորների ռևոլ-

յուցիոն պայքարի և համաշխարհային ռևոլյուցիոն շարժման գործում։ Այդ պայքարի եռամյա ժամանակամիջոցում (1905—1907 թ. թ.) Ռուսաստանի բանվոր դասակարգը և գյուղացիությունը անցան քաղաքական դաստիարակության հարուստ դպրոց։

Ռևոլյուցիան համոզիչ կերպով ցույց տվեց, որ ցարիզմը ժողովրդական մասսաների ոխերիմ թշնամին է։ Բանվորներն ու գյուղացիներն իրենց կենսական փորձով համոզվեցին, որ իրենց իսկական բարեկամները, իրենց կենսական շահերի իսկական պաշտպանները հանդիսանում են բոլշևիկները, և ոչ թե լիբերալ բուրժուազիան ու նրա էսեռամենշևիկյան սպասարկուները։

Բոլշևիկները վերցրել էին ժողովրդական ռևոլյուցիայի ծավալման և նրա հաղթանակի, աշխատավորներին ցարիզմի ու կալվածատերերի ճնշումից ազատագրելու, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերածելու կուրս։ Մենշևիկները, որոնք պաշտպանում էին լիբերալ բուրժուազիայի հեգեմոնիան (ղեկավար դերը) ռևոլյուցիայի մեջ, ընդհակառակը, վերցրել էին ռևոլյուցիան պարտության մատնելու կուրս։ Նրանք գլորվեցին համաձայնողականության ճահիճը և դարձան



բուրժուազիայի գործակալները բանվորական շարժման մեջ։

Առաջին ռևոլյուցիայի տարիներին Վ. Ի. Լենինի աշխատություններում, պարտիայի որոշումներում մշակվեցին այն ստրատեգիայի ու տակտիկայի հիմունքները, որի օգնությամբ Ռուսաստանի պրոլետարիատն աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, 1917 թվականին հիմնովին ոչնչացրեց կալվածատիրական-կապիտալիստական կարգը և իր Հայրենիքը դուրս բերեց սոցիալիստական և կոմունիստական զարգացման ուղու վրա։

Լենինիզմի իմաստուն ստրատեգիան և տակտիկան, ՍՄԿՊ-ի և սովետական ժողովրդի հարուստ փորձը բոլոր երկրների աշխատավորների համար ծառայում են որպես ոգեշնչման անսպառ աղբյուր նրանց անձնազոհ պայքարում ընդդեմ իմպերիալիստական ռեակցիայի ու ագրեսիայի, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԸ, ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ՄԵՍՐՈԲՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

*Այս տարի մարտի 6-ին, կիրակի օրը, տեղի կունենա Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային Սովետների ընտրությունները։*

*Սովետական երկրում ժողովուրդն իր իշխանությունն իրագործում է աշխատավորների դեպուտատների Սովետների միջոցով։ Սովետները կազմում են ՍՍՌՄ Պետական կարգի քաղաքական հիմքը։*

*Սովետները, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, ապահովում են իսկական, ծավալուն, կատարելապես հետևողական սովետական սոցիալիստական դեմոկրատիայի իրականացումը։*

*Սովետների ուժը նրա մեջ է, որ նրանց*



*կազմակերպողը և ուղղություն տվողը Կոմունիստական պարտիան է։ Աշխատավոր մասսաները Կոմունիստական պարտիայի մեջ տեսնում են իրենց հավատարիմ և հուսալի առաջնորդին, որովհետև Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է, մեր դարաշրջանի միտքը, պատիվը և խիղճն է։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ առաջնակարգ նշանակություն են տվել և տալիս են տեղական Սովետներին։*

*Եվ դա հասկանալի է, որովհետև պետական իշխանության բարձրագույն և պետական կառավարման օրգանների հրատարակած օրենքներն ու ընդունած որոշումները կենսագործում են տեղական Սովետները, նրանք գործ ունեն բնակչության ամենալայն մասսաների հետ։ Ահա թե ինչու Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ներկա ընտրությունները ունեն խոշոր քաղաքական նշանակություն։*

***

*Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն և միակ օրենսդիր օրգանը*

հանդիսանում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետն ընտրվում է Հայկական ՍՍՌ քաղաքացիների կողմից՝ ըստ ընտրական օկրուգների, 4 տարի ժամանակով, 5000 բնակչից 1 դեպուտատի նորմայով։

Եթե անցյալ ընտրություններում կազմակերպվել էին Հայկական ՍՍՌ ընտրությունների 289 ընտրական օկրուգներ, ապա ներկա ընտրություններին կազմակերպվեցին 300 ընտրական օկրուգ, միայն Երևանում ընտրական օկրուգների թիվն ավելացել է 5-ով։ Այդ ցույց է տալիս Հայկական ՍՍՌ քաղաքացիների բարեկեցության անշեղ աճը։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետն ընտրվում է ժողովրդի կողմից ամենադեմոկրատական ընտրական սիստեմով։ Դեպուտատների ընտրությունները կատարում են ընտրողները ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքների հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետն իր գործունեությունն իրականացնում է սեսիաներ հրավիրելու կարգով։ Սեսիաները Գերագույն Սովետի դեպուտատների պարբերաբար հրավիրվող ընդհանուր ժողովն են՝ լիա-



զորված լուծելու այն բոլոր հարցերը, որոնք ենթակա են Հայկական ՍՍՌ Բարձրագույն Իշխանության իրավասությանը։

Համաձայն Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 31-րդ հոդվածի, Գերագույն Սովետի սեսիաները գումարում է ՀՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը՝ տարեկան 2 անգամ։ Արտահերթ սեսիաները գումարում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունն իր նախաձեռնությամբ կամ Գերագույն Սովետի դեպուտատների մեկ երրորդի պահանջով։

Նոր գումարման Գերագույն Սովետի սեսիան բացում է ավագագույն դեպուտատը։ Նա արտասանում է բացման ճառ։ Այդ կարգը առաջին անգամ սահմանվեց ՍՍՌՄ առաջին գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում։ Այնուհետև, այն դառնալով կոնստիտուցիոն սովորույթ, պահպանվում և գործադրվում է նաև միութենական և ինքնավար ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների առաջին սեսիաներում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը իր սեսիայում որոշում և հաստատում է օրակարգը, ինչպես նաև ընդունում է իր աշխատանքների ռեկլամենտը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նա-

խագահը ղեկավարում է Գերագույն Սովետի նիստերը և տնօրինում է նրա ներքին կարգը։

Հայկական ՍՍՌ առաջին գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում ընտրվեց երեք մշտական հանձնաժողով՝ Օրենսդրական նախագծումների, Բյուջետային և Մանդատային։ Հիշյալ հանձնաժողովներն այնուհետև ընտրվեցին Հայկական ՍՍՌ բոլոր հաջորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիաներում։ Այդ հանձնաժողովները համարվում են մշտական, որովհետև գործում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի տվյալ գումարման ողջ ժամանակաշրջանում։

Մշտական հանձնաժողովների աշխատանքներն ունեն կարևոր նշանակություն։ Նրանք կոչված են օգնելու Գերագույն Սովետին՝ իրականացնելու իր լիազորությունները և լիովին հաշվետու են Գերագույն Սովետի առջև։

Բացի այդ, մշտական հանձնաժողովներից, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը համաձայն Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 33-րդ հոդվածի, երբ անհրաժեշտ է գտնում, նշանակում է քննիչ ու վերստուգիչ հանձնաժողովներ ամեն մի հարցի վերա-



բերյալ։ Այդ հանձնաժողովները կոչվում են ժամանակավոր և գործում են Գերագույն Սովետի սահմանած ժամկետներում։

***

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը ՀՍՍՌ-ում ունի լիակատար պետական իշխանություն այն իրավունքների սահմաններում, որպիսիք նրան վերապահված են Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 13, 18 և 22-րդ հոդվածներով։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հիմնական իրավասությանն է վերաբերվում ռեսպուբլիկայի Կոնստիտուցիայի ընդունումը և նրա մեջ փոփոխություններ մտցնելը, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության պլանի և պետական բյուջեի հաստատումը, ռեսպուբլիկայի դատական օրգանների կողմից դատապարտված քաղաքացիների ամնիստիայի և ներման իրավունքը։ Ռեսպուբլիկայի ներկայացուցչության սահմանումը միջազգային հարաբերություններում, ինչպես նաև ռեսպուբլիկական զորային կազմավորումներ ստեղծելու կարգի սահմանումը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը կազմում է Հայկական ՍՍՌ կառավարություն՝

Մինիստրների Սովետ։ Նա իր առաջին սեսիայում ընտրում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունն, կազմված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության նախագահից, նրա երկու տեղակալներից, քարտուղարից և Նախագահության 9 անդամից։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը հաշվետու է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի առաջ իր ամբողջ գործունեության համար։ Նրա, որոշ կարգի կարևոր հրամանագրերը, որոնք մասնակիորեն լրացնում կամ փոխում են Հայկական ՍՍՌ գործող օրենքների նորմաները, կամ որոնք վերաբերում են Հայկական ՍՍՌ առանձին մինիստրների պաշտոնից ազատմանը և նշանակմանը, հաստատվում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հերթական սեսիայում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետն իր առաջին սեսիայում կազմում է Հայկական ՍՍՌ Կառավարությոմն՝ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետ, որը պատասխանատու է և հաշվետու նրա առջև։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետն ընտրում է ՀՍՍՌ Գերագույն դատարանը։

ՀՍՍՌ-ում օրենսդրական իշխանությունը



իրականացնում է բացառապես ՀՍՍՌ Գերագույն Սովետը։ Այդ նշանակում է, որ ՀՍՍՌ տերիտորիայում միայն նա ունի օրենքներ հրատարակելու իրավունք, օրենքներ, որոնք պարտադիր են ՀՍՍՌ բոլոր օրգանների, պաշտոնատար անձանց և քաղաքացիների համար՝ առանց բացառության։ Օրենքները հրատարակելու իրավունքը պետական իշխանության բարձրագույն արտահայտությունն է։ Եթե ՀՍՍՌ Գերագույն Սովետը չունենար օրենքներ հրատարակելու իրավունք, ապա նա ռեսպուբլիկայում չէր լինի պետական իշխանության բարձրագույն օրգանը։

Օրենքների հրատարակումը ժողովրդի ներկայացուցչական օրգանի կողմից՝ վկայում է սովետական դեմոկրատիզմի մասին։

Ահա թե ինչու մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրում ռեսպուբլիկայի նշանավոր մարդկանց, լավագույն և տաղանդավոր բանվորներին, կոլտնտեսականներին, պետական ու պարտիական ականավոր գործիչներին, գիտնականներին, գրողներին և մեր ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին։

Ներկա ընտրությունների առանձնահատկությունն այն է, որ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների հետ միաժամանակ տեղի են ունենալու նաև ՀՍՍՌ Պետական իշխանության բոլոր տեղական օրգանների՝ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները, որոնք ընտրվում են տվյալ շրջանի, քաղաքի, գյուղի և ավանի աշխատավորության կողմից երկու տարի ժամանակով։

Համաձայն ՀՍՍՌ Կոնստիտուցիայի 57-րդ հոդվածի՝ պետական իշխանության տեղական օրգաններն իրենց տերիտորիայում ղեկավարում են կուլտուր-քաղաքական և տնտեսական շինարարությունը, սահմանում են տեղական բյուջեն, ղեկավարում են իրենց ենթակա կառավարման օրգանների գործունեությունը, ապահովում են պետական կարգի պահպանումը, աջակցում են երկրի պաշտպանունակության ուժեղացմանը, ինչպես նաև ապահովում են օրենքների կատարումը և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը։ Պետական իշխանության տեղական օրգանների իրավասությունն ու անելիքները հսկայական են։ Նրանք մեծ



դեր են խաղում ՍՄԿՊ-ի 19-րդ համագումարի, Պարտիայի և Սովետական կառավարության վերջին մի շարք որոշումների իրականացման գործում։

Ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և կենցաղի բոլոր հարցերը, որոնք անմիջականորեն հետաքրքրում են ազգաբնակչությանը, լուծվում են պետական իշխանության տեղական օրգանների միջոցով, նրանք անմիջականորեն կապված են մասսաների հետ, նրանց գործունեությունը ի սպաս է դրված աշխատավորների ամենօրյա կարիքների ու պահանջների բավարարմանը։ Աշխատավորների նյութական և կուլտուրական մըշտական աճող պահանջմունքների առավելագույն բավարարումը հանդիսանում է իշխանության տեղական օրգանների կարևորագույն խնդիրը։

Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործադիր կոմիտեները շրջանային Սովետների սեսիաներ են գումարում տարեկան ոչ պակաս, քան վեց անգամ, իսկ քաղաքային, քաղաքային-ռայոնական, գյուղական և ավանային Սովետների սեսիաները գումարվում են ամսական ոչ պակաս, քան մեկ անգամ։

Սովետների սեսիաներում քննարկվում և

լուծվում են տեղական կյանքի ամենից ավելի էական բոլոր հարցերը, սահմանվում և հաստատվում է տվյալ տերիտորիայի Սովետի բյուջեն և ժողովրդա-տնտեսական պլանը։ Սեսիաներում քննարկվում են նաև արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման ու ամրապնդման, գյուղատնտեսության կարևորագույն աշխատանքների նախապատրաստման ու անցկացման, պետական մթերումների կատարման հարցերը, ժողովրդական կրթության, կուլտ-լուս աշխատանքների, առողջապահության, կոմունալ տնտեսության ու բարեկարգման, առևտրի և այլ հարցեր։

Սովետների սեսիաներում սիստեմատիկորեն քննարկվում են գործկոմների, նրանց բաժինների հաշվետու զեկուցումներ, արդյունաբերական ձեռնարկությունների, ՄՏԿ-ների, սովխոզների և կոլտնտեսությունների աշխատանքը բարելավելու վերաբերյալ հարցեր։

Սեսիաներում դեպուտատներից ընտրվում են մշտական հանձնաժողովներ, որոնք սերտ կապ են ստեղծում Սովետների և ընտրողների միջև, աշխատավորական լայն մասսաներին ներգրավելով պետական կառավարման գործի մեջ։



Սովետների սեսիաներում ընտրում են գործադիր կոմիտեներ՝ կազմված նախագահից, նրա տեղակալներից, քարտուղարից և անդամներից։

Գործադիր կոմիտեները վերադաս օրգանների որոշումների հիման վրա ղեկավարում են իրենց տերիտորիայի կուլտուր-քաղաքական և տնտեսական շինարարությունը, իրենց բաժինների աշխատանքները, միջոցներ են ձեռք առնում իրականացնելու բյուջեն, ժողովրդա-տնտեսական պլանը, գործնականորեն կազմակերպում են պետական և հասարակական կարգի պահպանումը և այլն։

Համաձայն ՀՍՍՌ Կոնստիտուցիայի 66-րդ հոդվածի՝ աշխատավորների դեպուտատների Սովետների գործադիր օրգաններն անմիջականորեն հաշվետու են ինչպես այն Սովետի առաջ, որն ընտրել է նրանց, այնպես էլ վերադաս Սովետի գործադիր օրգանի առաջ։

Պետական իշխանության տեղական օրգանների կառուցման ողջ սիստեմը այդ օրգաններին դարձնում է առավել դեմոկրատական և միանգամայն ընդունակ՝ աշխատավորական մասսաների հարաճուն պա-

հանջները բավարարելու համար։ Այդ պատ-
ճառով էլ պարտիան և Սովետական կառա-
վարությունը հսկայական նշանակություն
են տալիս իշխանության տեղական օրգան-
ներին։

Ներկա ընտրությունները է՛լ ավելի կնպաս-
տեն Սովետների գործունեության հետագա
բարելավմանը՝ ժողովրդական տնտեսու-
թյան բոլոր բնագավառներում և է՛լ ավելի
կամրապնդեն կապը մասսաների հետ։

---

## ՆՈՐ ՏԱՐԻՆ ՆՇԱՆԱՎՈՐՎՈՒՄ Է ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Սովետական հերոսական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պանծալի հաջողություններով թևակոխեց նոր տարին։

1954 թվականին վիթխարի զարգացման հասավ սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը՝ ծանր արդյունաբերությունը, որը ժամանակակից տեխնիկայով զինում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, ապահովում է մեր Հայրենիքի անկախությունն ու ինքնուրույնությունը։ 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ծանր արդյունաբերությունն աճեց 3,4 անգամ։ 1913 թվականի համեմատությամբ, 1953 թվականին ծանր արդյունաբերության արտադրանքն ավելացել է 30 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։ Այժմ, նախապատերազմյան տարիների համեմատությամբ, մեքենաշինության արտադրանքն ավելացել է մոտ չորս անգամ։

Եղբայրական ռեսպուբլիկաների հետ միա-

սին, արդյունաբերության զարգացման գոր-
ծում աչքի ընկնող հաջողությունների հասավ
նաև մեր ռեսպուբլիկան։ Անցյալ տարի շա-
հագործման հանձնվեցին տասնյակ արդյու-
նաբերական նոր ձեռնարկություններ։ Շա-
հագործման հանձնվեցին Երևանի Մարգա-
րինի, Առանցքակալների նորակառույց գոր-
ծարանները, Շահումյանի շրջանի Լենինի
անվան մետաքսագործվածքային, Լենինա-
կանի չթի ֆաբրիկաները, Կիրովականի և
Ղափանի սառցասպանդանոցները։ 1954 թը-
վականին, ռեսպուբլիկայի արդյունաբերա-
կան ձեռնարկությունները յուրացրել են ար-
տադրանքի ավելի քան 150 նոր տեսակներ,
այդ թվում՝ մետաղահատ հաստոցների, ու-
ժային տրանսֆորմատորների, շարժական
էլեկտրակայանների, «Մոսկվիչ» ավտոդողե-
րի, նոր տիպի կոմպրեսորների ու պոմպերի,
բրդե բարձրորակ գործվածքների և ուրիշ
շատ արտադրանքի տեսակներ։

Այժմ ռեսպուբլիկայի գործարաններն ու
ֆաբրիկաներն արտադրում են մետաղահատ
հաստոցներ, գեներատորներ, էլեկտրաչափիչ
ճշգրիտ գործիքներ, հիդրոտուրբիններ ու է-
լեկտրալամպեր, ավտոմոբիլային ու տրակ-
տորային պահեստային մասեր, էլեկտրակա-
բելներ, շինանյութեր և այլն։ Թեթև և սննդի



արդյունաբերության ձեռնարկությունները
թողարկում են ժողովրդական սպառման
հարյուրավոր տեսակի առարկաներ։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության
զարգացման գործում խոշոր դեր խաղաց է-
լեկտրիֆիկացիան։ Միայն 1954 թվականին,
1940 թվականի համեմատությամբ, 3 անգամ
ավելի էլեկտրաէներգիա արտադրվեց։ Այժմ,
մեզ մոտ կառուցվում է ավելի քան 40 հիդ-
րոէլեկտրակայան։ Այդ էլեկտրակայանների
ընդհանուր կարողությունը 3 անգամ կգերա-
զանցի այն բոլոր հիդրոէլեկտրակայաննե-
րին, որոնք գործում էին 1954 թվականին։
Այս տարի իր առաջին էլեկտրահոսանքը
կտա աշխարհում խոշորագույն Կույբիշևյան
հիդրոէլեկտրակայանը։

Էլեկտրիֆիկացման գործում մեր ռեսպուբ-
լիկան նույնպես մեծ հաջողությունների է
հասել։ Ներկայումս մեզ մոտ մեկ շնչին ա-
վելի շատ էլեկտրաէներգիա է ընկնում, քան
Ֆրանսիայում և Իտալիայում։ Ռեսպուբլիկա-
յում ստեղծված հզոր էներգետիկայի բազա-
յի վրա հիմնվել են էլեկտրաքիմիական, քի-
միական, գունավոր մետալուրգիայի, էլեկ-
տրատեխնիկական, մեքենաշինության և ծա-
նըր արդյունաբերության մի շարք այլ ճյու-
ղեր։ Ստեղծված է գյուղական էլեկտրակա-

յանների հզոր ցանց։ Կոլտնտեսությունների ավելի քան 80 տոկոսը էլեկտրիֆիկացված է։

Նոր տարին նշանավորվում է նաև սոցիալիստական գյուղատնտեսության նոր հաջողություններով։ Սովետական մարդիկ մեծ աշխատանք կատարեցին գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումները կենսագործելու համար։ Երկրի բոլոր շրջաններում գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության համար ամուր հիմքեր են դրված։ Արդեն միլիոնավոր հեկտար խամ և խոպան հողեր են յուրացված Ղազախստանում և Սիբիրում։ 1954 թվականին խոպանում ցանվել է ավելի քան 3,5 միլիոն հեկտար, իսկ այս տարվա բերքի համար խոպան է հերկվել ավելի քան 17 միլիոն հեկտար։ Պարտիան ու կառավարությունը հաշվի առնելով եղած հնարավորությունները, որոշում են ընդունել 1956 թվականին խոպան հողերում հացահատիկային ցանքերը հասցնել մինչև 28—30 միլիոն հեկտարի։

1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ցանքատարածություններն երկրում ավելացան 13 տոկոսով։ Գյուղատնտեսությունը անցյալ տարի ստացավ ընդ-



հանուր գործածության 137 հազար տրակտոր (15-ուժանոցի վերածած) և 46 հազար ֆիզիկական միջշարային մշակության տրակտորներ, 37 հազար հացահատիկային կոմբայն; դրանցից 17 հազար՝ ինքնագնաց, 15 հազար կոմբայն կարտոֆիլի հավաքման, 5 հազար կոմբայն տեխնիկական կուլտուրաների հավաքման համար և մեծ քանակությամբ այլ մեքենաներ։ Խոպան հողերի յուրացման համար ուղարկվել է 115 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 18 հազար կոմբայն և շատ այլ տեխնիկա։

Վիթխարի հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան գյուղատնտեսության զարգացման գործում։ 1954 թվականին ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայաններն ստացան 196 տրակտոր, 169 կոմբայն, կարտոֆիլի քառակուսի-բնային ցանքի և բերքահավաքի 25 շարքացան ու կոմբայն և մեծ քանակությամբ կուլտիվատորներ։ Մեքենա-տրակտորային կայանները 1954 թվականին կատարեցին 260 հազար հեկտար ավելի հերկ, քան անցյալ տարի։ Նախորդ տարվա համեմատությամբ, կոլտնտեսություններում կովերի գլխաքանակն ավելացել է 12 հազար 160-ով, յուրաքանչյուր կովի կաթնատվությունը միջին հաշվով ավելացել է 55 կիլոգրամով։ Կոլտնտեսություններում

կառուցվել են 318 տիպային անասնապահական շենք և սիլոսի 431 աշտարակ։ Կոլտնտեսային 127 ֆերմաներում տեղադրվել են ավտոմատ խմոցներ, կերն ու աղբը փոխադրող սարքեր, էլեկտրակթի ագրեգատներ և կեր մշակող մեքենաներ։ Ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսություններում կոմպլեքսային մեքենայացման են ենթարկվել բոլոր աշխատատար պրոցեսները։

1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 15 ցենտներով ավելի բերք։ Պետությանը պլանից դուրս հանձնվել է 9 հազար տոննա խաղող։ 1953 թվականի 17 հազար տոննայի փոխարեն, 1954 թվականին կոլտնտեսությունները պետությանը հանձնեցին 23 հազար տոննա բանջարեղեն։

Որպեսզի մոտակա տարիներին լիովի բավարարվեն աշխատավոր մասսաների աճող պահանջմունքները, պարտիան ու կառավարությունը մշակեցին ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բարձրացման լայն ծրագիր։ Այդ ծրագրի կենսագործման հաստատուն հիմքերը դրվեցին անցյալ տարի։ Անցած տարի արտադրվեց ավելի քան 5,5 միլիարդ մետր բամբակե



գործվածքներ, 242 միլիոն մետր բրդե գործվածքներ, 520 միլիոն մետր մետաքսե գործվածքներ։ 1950 թվականի համեմատությամբ բամբակե գործվածքների թողարկումն ավելացել է 43 տոկոսով, բրդե գործվածքներինը՝ 56 տոկոսով և մետաքսե գործվածքներինը՝ 4 անգամ։ Անցած տարի մեծ չափերով աճեց նաև ժողովրդական սպառման մյուս ապրանքների թողարկումը։

Մեր երկրում ամեն տարի իջնում են մանրածախ ապրանքների գները։ 1954 թվականին ժողովրդական սպառման ապրանքների գները 2,3 անգամ ցածր էին 1947 թվականի գներից։ Նույն ժամանակաշրջանում կոլտնտեսային շուկայի գներն իջել են գրեթե 4 անգամ։

Սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարելավման կարևորագույն պայմաններից մեկը բնակարանային շինարարությունն է։ Միայն հինգերորդ հնգամյակի 4 տարում բնակարանային շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումները, անցած հնգամյակի համեմատությամբ, ավելացել են երկու անգամ։ Հետպատերազմյան տարիներին մեր երկրի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 200 միլիոն քառա-

կուսի մետր բնակելի տարածություն և գյուղական վայրերում՝ 4,5 միլիոն բնակելի տուն։ Այդ նշանակում է, որ բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների միլիոնավոր ընտանիքներ ապահովված են նոր և հարմար բնակարաններով։ Նոր տարում ավելի ուժեղ թափով կծավալվի բնակարանային շինարարությունը։

Եթե կապիտալիստական երկրներում անընդհատ ավելանում է գործազուրկների թիվը, ապա Սովետական Միությունում տարեցտարի ավելանում է բանվորների ու ծառայողների թիվը։ 1953 թվականին մեր երկրում կար 44 միլիոն 800 հազար բանվոր և ծառայող, իսկ 1954 թվականին նրանց թիվը հասավ 47 միլիոնի։ 1940 թվականի համեմատությամբ, հինգերորդ հնգամյակի չորս տարում, բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը աճել է 74 տոկոսով։

Հանրագումարի բերելով իրենց խաղաղ և ստեղծագործ աշխատանքի անցած տարվա արդյունքները, մեր երկրի աշխատավորները միաժամանակ ստանձնում են նոր պարտավորություններ 1955 թվականին ավելի մեծ հաջողությունների հասնելու համար։ Սովետական ժողովուրդը ամեն ջանք գործ է դնում, որպեսզի նոր տարին նշանավորի նոր



հաջողություններով։ Արդյունաբերության հարյուր հազարավոր աշխատողներ մոսկվացիների օրինակով, աշխատանքային սխրագործություններ են կատարում հանուն այն բանի, որպեսզի սիրասուն Հայրենիքին տան ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։ Օրեցօր բուռն թափով ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Արդեն բազմաթիվ ձեռնարկություններ ժամկետից շուտ կատարել են հինգերորդ հնգամյա պլանը, մեծ չափերով բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը, իջեցրել արտադրանքի ինքնարժեքը։ Հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունից հաղթանակով են դուրս գալիս նաև մեր ռեսպուբլիկայի շատ գործարաններ ու ֆաբրիկաներ, ցեխեր ու բրիգադաներ, աշխատանքի տասնյակ առաջավորներ։ Ահա Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանը, որ հնգամյա պլանը կատարել է 3 տարի ինն ամսում։ 1954 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, գործարանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 33,7 տոկոսով։ Գործարանի կոլեկտիվը

պարտավորություն է ստանձնել հինգերորդ հնգամյա պլանը կատարել 150 տոկոսով։ 1954 թվականի տարեկան արտադրական պլանները ժամկետից շուտ կատարեցին Երևանի էլեկտրամեքենաշինական, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, Մուլիտի, Հրուշակեղենի-մակարոնի, Շահումյանի շրջանի Լենինի անվան մետաքսագործվածքային, Լենինականի Մոլոտովի անվան մանվածքային, մեխանիկական և ռեսպուբլիկայի շատ գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվներ։

1955 թվականին նոր և լուրջ հեռանկարներ են բացվում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման համար։

Սովետական ժողովուրդը, ինչպես երբեք, համախմբված է իր հարազատ Կոմունիստական պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ նոր տարում նոր և ավելի փառապանծ հաջողությունների կհասնի մեր մեծ Հայրենիքը։

---

## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՇԽԱՏԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Հ. ՄԱԴՈՅԱՆ

Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

Հանրային անասնաբուծության հետագա զարգացման համար եռանդուն աշխատանք է կատարվում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում։ Անշեղորեն կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները, բազմաթիվ կոլտնտեսություններ, սովխոզներ, անասնապահական ֆերմաներ, մեծ թվով կոլտնտեսականներ անասնաբուծության զարգացման գործում հասել են նորանոր հաջողությունների։ Հենց այդ է հաստատում այն փաստը, որ անասնաբուծության տասնյակ առաջավորներ արդեն ձեռք են բերել 1955 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք։

Ստեփանավանի շրջանի Մեդովկա գյուղի

Կալինինի անվան կոլտնտեսության կովաբուծական ֆերման (վարիչ Դ. Զարբոսկով) յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 2018 կգ. կաթ։ Նույն կոլտնտեսության կթվորուհի, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու Ֆ. Սիրովատկինան յուրաքանչյուր կովից ստացել է 2693 կգ. կաթ։

Կոլտնտեսության անասնաբույծները կովերի կաթնատվության բարձրացման գործում հաջողություններ են ձեռք բերել անասունների կերակրման, խնամքի և պահպանման պայմանների բարելավման, ինչպես նաև անասունների ցեղայնությունը բարելավելու շնորհիվ։ Կաթնատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի մսուրային շրջանի հաջող նախապատրաստումը և անցկացումը, որովհետև մսուրային շրջանում անբավարար կերակրման ու խնամքի հետևանքով ամռան արոտային շրջանում կովերից պակաս կաթ է ստացվում։ Դրա համար այստեղ հատուկ ուշադրություն է նվիրվում մսուրային շրջանը հաջող նախապատրաստելու և անցկացնելու գործին։ Ինչպես նախորդ տարիներին, այս տարի ևս կոլտնտեսությունը կուտակել է բավարար քանակի խոտ, պատրաստել է սիլոս, հավաքել



է կերի ճակնդեղ, առանձնացրել է խտացրած ու հատիկային այլ կերեր։ Մսուրային շրջանում կովերին տրվող կերաբաժնի մեջ մտցվում է 15—20 կգ. սիլոս, 8—10 կգ. քուսպ։ Կերաբաժնում հյութալի կերերի այդ քանակը զգալի չափով նպաստում է մսուրային շրջանում կովերից ավելի շատ կաթ ստանալուն։ Կոլտնտեսությունը վերջին տարիներում զգալի աշխատանք է կատարել ամբողջ անասնագլխաքանակը տիպային անասնաշենքերով ապահովելու ուղղությամբ։ Ունենալով տիպային անասնաշենքեր, լայն հնարավորություն է ստեղծվում մսուրային շրջանում անասունների խնամքը կազմակերպել օրինակելի, մեքենայացնել աշխատատար պրոցեսները և բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը ֆերմայում։

Ֆերմայի աշխատողները մսուրային շրջանում ճշտորեն կիրառում են զոոտեխնիկական կանոնները հատկապես կովերի կթման, կերակրման ու մաքրման վերաբերյալ։ Անասուններին սիստեմատիկ դուրս են բերում զբոսանքի, հետևում են, որ կովերի հանգիստը կատարվի ամեն օր նույն ժամերին, զոոտեխնիկի կազմած և կոլտնտեսության վարչության կողմից հաստատված աշխատակարգի համաձայն։

*Անասնաբուծության առաջավորները խոշոր ուշադրություն են դարձնում ամռան-արոտային շրջանի բոլոր առավելությունները ճիշտ օգտագործելու վրա։*

*Արոտային շրջանում կովերից բարձր կաթ ստանալուն մեծ չափով նպաստում է արոտների հերթափոխ արածեցումը և կթի աշխատանքների ճիշտ կազմակերպումը։*

*Այստեղ կովերին կթում են օրական 3 անգամ։ Այդ հնարավորություն է տալիս մաքսիմալ չափով օգտագործել կովի կաթ տալու ունակությունը և յուրաքանչյուր կովից շատ կաթ ստանալ։*

*Գիտության տվյալներից և անասնաբուծության առաջավորների փորձից հայտնի է, որ երբ կովի կուրծը կաթով լցվում է, սկզբում դադարում է կաթնայուղի գնդիկների, ապա նաև պլազմայի արտադատումը, հետևաբար կրծի գերլցվելու դեպքում կաթ արտադրելու պրոցեսը դադարում է։ Պարզ է, որ 3 անգամ կթելու դեպքում կովի կրծի գերլցման տեղիք չի տրվի և կաթի արտազատման պրոցեսը ոչ միայն չի դադարի, այլ նույնիսկ չի դանդաղի, հետևապես այստեղ ձեռնարկված այդ միջոցառումը, կովերին օրական 3 անգամ կթելը, իրոք զոոտեխնիկական կարևոր միջոցառում է և կովերի կաթնատվության*



*բարձրացմանը նպաստող կարևոր պայման։*

*Լուրջ ուշադրություն է նվիրվում նաև կովերի զուգավորման և ծնի աշխատանքների կազմակերպման գործին, որովհետև ճիշտ զուգավորումից է կախված անասունների ցեղի բարելավումը։ Դրա համար այստեղ զուգավորման համար օգտագործվում են ստուգված և բարձրարժեք արտադրողներ։ Ամբողջ տարին և հատկապես կովերի զուգավորման շրջանում արտադրողներին տրվում են սպիտակուցներով հարուստ լրացուցիչ կերեր (կաթ, ձու, գարու կամ վարսակի ալյուր և այլն)։*

*Կոլտնտեսությունը զոոտեխնիկական կոմպլեքս միջոցներ է կիրառում անասնահոտի հետագա կատարելագործման ուղղությամբ։ Այդ գործում կոլտնտեսության անասնաբույծներին մեծ օգնություն է ցույց տալիս Ստեփանավանի պետական տոհմաբուծարանը։*

*1955 թվականին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար ծավալված մրցությունից հաղթանակով դուրս եկավ նաև Լոռվա տոհմային սովխոզի անասնաբույծների կոլեկտիվը։ Սովխոզի աշխատողները 1954 թվականի հոկտեմբերի 1-ի տվյալներով*

յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել են 3452 կգ. կաթ։ Լավագույն ցուցանիշների են հասել սովխոզի առանձին կթվորուհիներ, ինչպես, օրինակ՝ կթվորուհի Ա. Հովհաննիսյանը, որն իր խնամքին հանձնված յուրաքանչյուր կովից ստացել է 4939 կգ. կաթ, իսկ Գ. Նովրուզովան՝ 5069 կգ. կաթ։ Եթե կաթի այդ քանակը յուղի վերածենք, ապա կստացվի, որ անվանի կթվորուհիները յուրաքանչյուր կովից ստացել են մոտ 220—250 կգ. յուղ։

Սովխոզի կոլեկտիվը լուրջ աշխատանք է կատարել կերի կայուն բազա ստեղծելու գործում։ Այստեղ ամեն տարի յուրաքանչյուր կովի համար կուտակում են 2—2,5 տոննա լավորակ խոտ, 4—5 տոննա սիլոս, մոտ մեկ տոննա արմատապտուղ և մեկ տոննա խտացրած կերեր։ Սովխոզը 1948 թվականից սկսած, կիրառում է կերային ցանքաշրջանառություն։

Կթվորուհիներ Ա. Հովհաննիսյանը, Գ. Նովրուզովան, ինչպես նաև մյուս կթվորները կովերին կերակրում և խնամում են, հաշվի առնելով նրանց անհատական առանձնահատկությունները։

Սովխոզում մեծ աշխատանք է տարվում անասունների ցեղի բարելավման ուղղու-



թյամբ։ Յուրաքանչյուր տարի կատարվում է անասունների տեսակագրում (բոնիտիրովկա) և ընտրություն ըստ նրանց մթերատվության, ցեղային հատկության, կաթի յուղայնության և կենդանի քաշի։

Առանձնապես պետք է նշել, որ սովխոզում մատղաշների նկատմամբ նպատակասլաց խնամք է տարվում նրանց կաթնատու հատկությունների կատարելագործման ուղղությամբ։ Որպես կանոն այստեղ մատղաշներն աճեցվում են չտաքացվող գոմերում։ Միջին հաշվով յուրաքանչյուր մատղաշին կաթնային կերակրման շրջանում տրվում է 300 կգ. անքաշ և 1500 կգ. քաշած կաթ, ինչպես նաև 200 կգ. խտացրած կերեր։ Կերակրման և խնամքի լավ պայմաններ ստեղծելու շնորհիվ մատղաշների աճը (մինչև 6 ամսական հասակը) օրական հասնում է 800—900 գրամի։

Սովխոզի անասնապահները մեծ աշխատանք են կատարել նաև անասնապահության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու անասունների ամբողջ գլխաքանակը բարեկարգ անասնաշենքերով ապահովելու համար։

---

# ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## Թվեր և փաստեր

*Հունգարական ժողովուրդը ավելի քան 400 տարի գտնվում էր օտարերկրյա զավթիչների լծի տակ և դաժան շահագործման ենթարկվում նրանց կողմից։ Աշխատավորները տառապում էին աղքատությունից։ Նրանք իրավազուրկ էին և ստրկացված։*

*Այժմ անցյալի գիրկն են անցել հունգար ժողովրդի տառապանքները։ Հզոր Սովետական Միության եղբայրական օգնության շնորհիվ հունգար ժողովուրդը ձեռք է բերել լիակատար ազգային անկախություն։ Հունգարիան դարձել է ազատ ու անկախ ժողովրդական ռեսպուբլիկա։*

*Ժողովրդական դեմոկրատիայի պայմաններում, պատմական շատ կարճ ժամանակաշրջանում ժողովրդական ռեսպուբլիկան հասավ վիթխարի հաջողությունների։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

✪ *Այժմ Հունգարիայի արդյունաբերության արտադրանքի նախապատերազմյան 1938 թվականի մակարդակը գերազանցում է 3 անգամ։ Երեք տարվա*



*ընթացքում (1951—1953 թ. թ.) արդյունաբերության արտադրանքը երկրում աճել է 73 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում ծանր արդյունաբերության արտադրանքն ավելացել է 48,8 տոկոսով, թեթև արդյունաբերության արտադրանքը՝ 40,7 տոկոսով։ Սննդի արդյունաբերության արտադրանքը՝ 63,2 տոկոսով և այլն։ Աշխատանքի արտադրողականությունը ֆաբրիկաներում և գործարաններում բարձրացել է 27 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքը իջել է 8 տոկոսով։*

✪ *Հնգամյա պլանի վերջին տարում (1954 թ.) հունգարիայի սոցիալիստական արդյունաբերությունը 180 տոկոսով շատ ավելի արտադրանք է տվել, քան 1949 թվականին։*

✪ *Բուռն թափով զարգանում են արդյունաբերության մի շարք կարևոր ճյուղեր։ Ածխի հանույթը 1949 թվականի 11,48 միլիոն տոննայից 1954 թվականին հասավ 22,65 միլիոն տոննայի։ 1949 թվականին արտադրած 2520 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի փոխարեն 1954 թվականին արտադրվել է 5100 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ 1940 թվականի արտադրած 308 հազար տոննա չուգունի փոխարեն 1954 թվականին արտադրվել է 84,4 հազար տոննա չուգուն, 1 միլիոն 678 հազար տոննա պողպատ և այլն։*

✪ *Կրկնակի չափերով ավելացել է թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքը։ 1949 թվականի*

167 միլիոն մետրի փոխարեն 1954 թվականին թո-
ղարկվել է 220 միլիոն մետր բամբակյա գործվածքե-
ղեն, 4,6 միլիոն զույգ կոշիկի փոխարեն 1954 թվա-
կանին արտադրվել է 123 միլիոն զույգ կոշիկ, 1949
թվականին արտադրած 144,4 հազար տոննայի փո-
խարեն 1954 թվականին արտադրվել է 287 հազար
տոննա շաքար։

✪ Տարեցտարի ավելանում է Հունգարական ժո-
ղովրդական Ռեսպուբլիկայի ազգային եկամուտը։ 1952
թվականին երկրի ազգային եկամուտը, 1951 թվականի
համեմատությամբ, ավելացել է 4,7 տոկոսով, իսկ
1953 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ,
ավելացել է 11,8 տոկոսով։

Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում սո-
ցիալիստական սեկտորի արտադրանքի տեսակարար
կշիռը ժողովրդական տնտեսության մեջ կազմում է
մոտ 86 տոկոսը։

✪ Հունգարական աշխատավորների պարտիան և
պետությունը լուրջ միջոցառումներ են ձեռնարկել
գյուղատնտեսության արտադրանքն ավելացնելու ուղ-
ղությամբ։ Հիմնական ուշադրությունը կենտրոնաց-
ված է սոցիալիստական սեկտորի, ամենից առաջ
հողագործական արտադրական կոոպերատիվների
կազմակերպման ու ամրապնդման վրա։ 1954 թվա-
կանին նախորդ տարվա համեմատությամբ 2 անգամ
ավելի կապիտալ ներդրումներ է կատարվել գյուղա-
տնտեսության մեջ։



✪ Այժմ 200 հազար գյուղական տնտեսություն-
ընդգրկված է արտադրական կոոպերատիվներում,
որոնց անդամների թիվը կազմում է մեկ քառորդ մի-
լիոն մարդ։ Այդ արտադրական կոոպերատիվները
մշակում են երկրի վարելահողերի 18 տոկոսը։

✪ Հունգարիայի ՄՏ կայաններում 1951 թվակա-
նին կար 6 հազար տրակտոր, իսկ 1954 թվականին
տրակտորների թիվը հասավ 19,5 հազար միավորի
(վերածած 15 ձիու-ուժանոցի), ՄՏԿ-ները խոշոր դեր
են կատարում գյուղատնտեսության զարգացման գոր-
ծում։ Հունգարիայի մեքենա-տրակտորային կայան-
ները 1953 թվականին կատարեցին իրենց արտադրա-
կան պլանները։

✪ Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում
գոյություն ունեն մեծ թվով պետական տնտեսու-
թյուններ։ Այդ պետական տնտեսությունները մշակում
են ռեսպուբլիկայում եղած վարելահողերի 12,5 տո-
կոսը։

✪ Զգալի չափով բարելավվել են ամբողջ բնակչու-
թյան նյութական պայմանները։ Այսպես, 1954 թվա-
կանի առաջին կիսամյակում գործարանային բանվոր-
ների ռեալ աշխատավարձը 57 տոկոսով և գյուղացի-
ների ռեալ եկամուտները 50 տոկոսով ավելի բարձր
էին, քան 1938 թվականին։ Այդ ժամանակամիջոցում
յուրաքանչյուր շնչին 18 տոկոսով շատ հաց և 75
տոկոսով շատ շաքար է վաճառվել։

✪ Հունգարիայում 2 անգամ կատարված է գների

իջեցում։ Քաղաքներում և գյուղերում լայն ծավալ է ստացել պետական և կոոպերատիվ առևտուրը։ 1953 թվականի համեմատությամբ 1954 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի ծավալն ավելացել է 19 տոկոսով։

✪ Երկրում ուժեղ թափով առաջ է գնում բնակարանային շինարարությունը։ 1953 թվականի համեմատությամբ, 1954 թվականին 2 անգամ ավելի դրամական ու նյութական միջոցներ տրամադրվեցին բնակարանային շինարարությանը։ Այժմ Հունգարիայի մայրաքաղաք Բուդապեշտի տարբեր ռայոններում կառուցվում են 12 կվարտալներ— 5.500 բնակարաններով։ Յուրաքանչյուր բնակարան ունենալու է բաղնիք, խոհանոց, պատի պահարան, պահեստ, վառվող գազի հարմարանք, տաք և սառը ջրերի ծորակներ, հեռախոս և ռադիո։

✪ Նորակառույց յուրաքանչյուր 50 բնակարանի համար լինելու է մեքենայական լվացքատուն, չորացնող ու հարդուկող մեքենաներով։ Ամեն մի շենքի ներքնահարկում կա հատուկ «գարաժ» մանկական սայլակների համար։ Ամեն կվարտալում լինելու է մեկ մանկապարտեզ, մսուր և ակումբ։

✪ Երբեք Բուդապեշտի փողոցներում չեն եղել այնքան տրամվայներ, ավտոբուսներ, տրոլեյբուսներ, տաքսիներ, ինչպես հիմա։ 1953 թվականին քաղաքային տրանսպորտը փոխադրել է 950 միլիոն մարդ։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

*ՄԱՈ ՑԶԵ-ԴՈՒՆ— «Ընտիր երկեր»։ Հատոր 2-րդ։ գինը 14 ռ. 10 կ., 480 էջ, տիրաժ 5000։*

*Գ. ՇԻՏԱՐԵՎ— «Կոմունիստը պարտիական որոշումների կատարման ակտիվ մարտիկն է»։ Գինը 1 ռ. 20 կ., 122 էջ, տիրաժ 8000։*

*ՌՈՒ. ԺՈՒԿՈՎԻՆ, Վ. ԺՈՒՐԱՎՍԿԻ— «Պարտիայի գյուղական շրջկոմը»։ Գինը 45 կ., 60 էջ, տիրաժ 5000։*

*Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆ— «Բագրատ Ղարիբջանյան» (1890—1920)։ Գինը 4 ռ., 196 էջ, տիրաժ 5000։*

*ՍՏ. ԶՈՐՅԱՆ— «Երկերի ժողովածու», հատոր վեցերորդ, «Պապ թագավոր», գինը 11 ռ. 70 կ., 648 էջ, տիրաժ 5000։*

*ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ— «Հայրենիք»։ Գինը 6 ռ. 60 կ., 376 էջ, տիրաժ 5000։*

*իջեցում։ Քաղաքներում և գյուղերում լայն ծավալ է ստացել պետական և կոոպերատիվ առևտուրը։ 1953 թվականի համեմատությամբ 1954 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի ծավալն ավելացել է 19 տոկոսով։*

✪ *Երկրում ուժեղ թափով առաջ է գնում բնակարանային շինարարությունը։ 1953 թվականի համեմատությամբ, 1954 թվականին 2 անգամ ավելի դրամական ու նյութական միջոցներ տրամադրվեցին բնակարանային շինարարությանը։ Այժմ Հունգարիայի մայրաքաղաք Բուդապեշտի տարբեր ռայոններում կառուցվում են 12 կվարտալներ— 5.500 բնակարաններով։ Յուրաքանչյուր բնակարան ունենալու է բաղնիք, խոհանոց, պատի պահարան, պահեստ, վառվող գազի հարմարանք, տաք և սառը ջրերի ծորակներ, հեռախոս և ռադիո։*

✪ *Նորակառույց յուրաքանչյուր 50 բնակարանի համար լինելու է մեքենայական լվացքատուն, չորացնող ու հարդուկող մեքենաներով։ Ամեն մի շենքի ներքնահարկում կա հատուկ «գարաժ» մանկական սայլակների համար։ Ամեն կվարտալում լինելու է մեկ մանկապարտեզ, մսուր և ակումբ։*

✪ *Երբեք Բուդապեշտի փողոցներում չեն եղել այնքան տրամվայներ, ավտոբուսներ, տրոլեյբուսներ, տաքսիներ, ինչպես հիմա։ 1953 թվականին քաղաքային տրանսպորտը փոխադրել է 950 միլիոն մարդ։*

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

*ՄԱՈ ՑԶԵ-ԴՈՒՆ— «Ընտիր երկեր»։ Հատոր 2-րդ։ գինը 14 ռ. 10 կ., 480 էջ, տիրաժ 5000։*

*Գ. ՇԻՏԱՐԵՎ— «Կոմունիստը պարտիական որոշումների կատարման ակտիվ մարտիկն է»։ Գինը 1 ռ. 20 կ., 122 էջ, տիրաժ 8000։*

*ՌԻ. ԺՈՒԿՈՎԻՆ, Վ. ԺՈՒՐԱՎՍԿԻ— «Պարտիայի գյուղական շրջկոմը»։ Գինը 45 կ., 60 էջ, տիրաժ 5000։*

*Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆ— «Բագրատ Ղարիբջանյան» (1890—1920)։ Գինը 4 ռ., 196 էջ, տիրաժ 5000։*

*ՍՏ. ԶՈՐՅԱՆ— «Երկերի ժողովածու», հատոր վեցերորդ, «Պապ թագավոր», գինը 11 ռ. 70 կ., 648 էջ, տիրաժ 5000։*

*ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ— «Հայրենիք»։ Գինը 6 ռ. 60 կ., 376 էջ, տիրաժ 5000։*



Խմբագիր՝ Գ.Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 2 1955 г.

ՎՖ 08913 Պատվեր 71 Տիրաժ 8150

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի
№ 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8: 1955 թ.
Գինը 50 կ.: